**ԻՏԱԼԻՈՅ** հանրապետութեան առաջին նախագահը էնրիքօ տէ Նիքոլա մեռաւ առջի օր Նափոլիի մէջ, 82 տարեկան էր։

**ԱՐԵՒԵԼԵԱՆ** Գերմանիոյ փոխ – վարչապետ Վալթեր Ուլպրիխթ ճառ մը խօսեցաւ արեւելեան Պերլինի խորհրդարա – նին առջեւ շեշտելով.— «Եթէ Պ. Այ – զընհաուըր Միացեալ Նահանգներու Նախագահը, այսինքն դրամատիրական պետութեան մը ներկայացուցիչը կը խոր – հրդակցի Խորհրդ. Միութեան, այսինքն համայնավար պետութեան մը ներկայա – ցուցիչ՝ Պ. Խրուշչեւի հետ, ապազինման մասին, պատճառ չկայ որ գերման երկու պետութեանց վարչապետները չկարենան իրարու հետ խօսիլ»։

**ՀԱՅԻՔՈՒՐԻ** (Փա տը Քալէ) համայ – նավար քաղաքապետը դիտողութեան արժանացաւ իր կուսակցութեան կողմէ ո – րովհետեւ ընդունած էր հանրապետու – թեան նախագահ՝ Զօր. տը Կոլը։

**ՖՐԱՆՍԱՅԻ** ընկերվարական կուսակ – ցութեան վարիչ մարմինը զեկոյց մը հըրատարակեց յայտնելով թէ Ալժ. Ազատ. Ճակատին յայտարարութիւնը ճիգ մը եւ իրական յառաջդիմութիւն մը կը յայտ – նաբերէ։ Այդ պատճառով կը դատապարտէ այդ մասին տրուած այն լուրերը ո – րոնք միայն բացասական կողմ մը կը գտնեն Ֆերաթ Ապպասի յայտարարութեան մէջ։ Միւս կողմէ ծերակուտական եւ Մարսէյլի քաղաքապետ՝ Կաստոն Տէֆէր «Էքսփրէս»ի մէջ կը գրէ թէ Ֆրանսայի շահը կը պահանջէ որ բանակցի։

**ՊՈԼՍՈՅ** մէջ արկած մը պատահած է առջի օր։ Գործաւորներ փոխադրող հանրակառք մը ջարդ ու փշուր եղած է, 14 հոգի մեռած են, եւ 31 հոգի վիրաւոր – ուած, որոնց 27ը ծանր։

**ՀՈՒՆԳԱՐԻՈՅ** մէջ երկու հունգար գիւղացիներ ցկեանս բանտարկութեան դատապարտուեցան եւ վեց ուրիշներ 6էն 5 տարի բանտարկութեան, որովհետեւ երկու ռուս զինուոր սպաննած էին 1945–ին, պատերազմի ատեն։

**ՖՐԱՆՔՕ** յայտարարեց թէ «Թշնամիին հետ որեւէ շփում օգտակար է» ակնարկելով Քէմփ Տէյվիտի խօսակցութեանց։ Սպանական պետական ղեկավարը չեշ – տեց թէ Խորհրդային Միութիւնը Սպատանիկներու եւ Լոնիքի յաջողութիւնները գերման գիտուններուն կը պարտի։ Ֆըրանքօ աւելցուց որ եթէ Խորհրդ. Մի – ութիւնը խաղաղութիւն կ'ուզէ տարբեր պատճառներու համար է եւ գլխաւորա – բար որովհետեւ պաղ պատերազմին մէջ է որ «Խորհրդ. Միութիւնը եւ Համայնա – վարութիւնը իրենց լաւագոյն զէնքը կը գտնեն»։

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Թաղականութիւնս իր ցաւակցութիւնը կը յայտնէ Տէր եւ Տիկին Ալապէկեան, Աճէմեան ընտանիքին եւ ազգականնե – րուն, Թորոս Զառմանեանի մահուան առթիւ։

Թաղ. Խորհ. Գամփ Ֆրէզի

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Շնորհակալութեամբ ստացանք Տէր եւ Տիկին Հայկ Ալապէկեանէ երեքհազար ֆրանք, փոխան ծաղկեպսակի, իրենց ազգականին միլանաբնակ ծանօթ եւ սիրուած ազգային, Թորոս Զառմանեանի մահուան առթիւ, որ տեղի ունեցաւ 15 Սեպտ.ին Մարսէյլ։

Թաղ. Խորհ. Գամփ Ֆրէզի

×

Տէր եւ Տիկին Կարապետ Կարապետ – եան, Պ. Շահէն Կարապետեան, Այրի Տիկին Հայարփան Կարապետեան, Տէր եւ Տիկին Գրիգոր Սրապեան, Տէր եւ Տիկին Արամ Մանուկեան, Այրի Տիկին Մարիամ Տէրտէրեան իրենց խորին շնորհակալու – թիւնները կը յայտնեն բոլոր անոնց ո – րոնք գրաւոր, անձամբ կամ ծաղկեպսա – կով ցաւակցութիւն յայտնեցին իրենց հօր, մեծ հօր, հօրեղբօր, աներհօր

ՂՈՒԿԱՍ ԿԱՐԱՊԵՏԵԱՆԻ

(Զարսանճաղի Խարեսիկ գիւղէն 85 տա – րեկան) մահուան առթիւ։

Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ
## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

Պիտի տօնուի Նոյեմբեր 7ին, Շաբաթ իրիկուն մինչեւ լոյս, Ալհամպրայի սըրահը, Մարսէյլ։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Կուտրեթ Կազարեան կը ծանուցանէ թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի ժամը 15.30ին, Պուա Քոլոմպի գերեզմանա – տունը, իր ամուսնոյն՝

ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԿԱԶԱՐԵԱՆԻ

շիրիմին վրայ։

Յիշատակը յարգողները կը հրաւիր – ուին։

×

Այրի Տիկին Լիլիկ Սապոնճեան եւ զաւակները, կը ծանուցանեն թէ այս Կիրակի ժամը 13.30ին մասնաւոր հոգեհան – գիստ պիտի կատարուի Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, իրենց ամուսնոյն եւ հօր՝

ՆԵՐՍԷՍ ՍԱՊՈՆՃԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ։

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները։

## ՎԵՐԱՄՈՒՏ

Կրընոպլի Կապ. Խաչի դպրոցը կը վերաբացուի, ուսուցչական անցեալ տար – ուան կազմով, այս Կիրակի առաւօտ։ Արձանագրութիւնները տեղի կ'ունենան նոյն օրը, դպրոցի սրահը՝ ուր պէտք է ներկայան աշակերտները իրենց գրքերով, ժամը 9ին։

Օրպէսզի գաղութիս մէջ ամէն մէկ հայ մանուկ հնարաւորութիւն ունենայ սոր – վելու իր մայրենի լեզուն, դասաւանդու – թիւնները կ'ըլլան ձրի՝ ինչպէս անցեալ տարի։

ԿԱՊ. ԽԱՉԻ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ԿԱՐՄԻՐ ԽԱՉ

Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլէի օգափոխութեան կայանին կը նուիրեն.— Պ. Պ. Մարկոսեան, Հանըմեան երկու հա – զարական ֆր., Արամ Փէշթիմալճեան, Ալիքսանեան, Տէր եւ Տիկին Տարօնեան հազարական ֆրանք։

Հայ Կարմիր Խաչի Փարիզի դարմանատան կը նուիրեն.—

Պ. Պ. Իսպէնեան, Պիպալեան, Պրաչ – եան եւ Ֆէրհատեան 500ական ֆրանք։

## ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ

Ընկերական հանդիպում – Թէյասեղան, ի պատիւ պարսկահայ երիտասարդ ար – ձակագիր Պ. Ռ. Բէնի (Ռուբէն Յովհան – նէսեան)։ Այս շաբաթ գիշեր, ժամը 21 – ին, Գեղամ Աճէմեանի ճաշարանը։ Կը հրաւիրուին Միութեանս անդամներն ու համակիրները։

## ՀԱՅԱԾԷՍ ՊԱՏԱՐԱԳ

Այս Կիրակի (4 Հոկտեմբեր) երեկոյ – եան ժամը 6ին հանդիսաւոր պատարագ պիտի մատուցանէ եւ քարոզէ Գեր. Կոմիտաս Վ. Զարքճեան, Պոլսոյ հայ կղերէն, Իսի լէ Մուլինօ, Սէն Պրինոյի մատրան մէջ։ (148, Ռիւ տը լ'Էկալիթէ)։



## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Ծիածան Օննիկ Սրապեան եւ Օր. Հերանոյշ Սրապեան (Փարիզ), ինչպէս նաեւ բոլոր ազգականները իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտ – նեն բոլոր անոնց որոնք անձամբ կամ գըրաւոր իրենց ցաւակցութիւնը յայտնեցին իրենց քրոջ զաւկին եւ ազգականին ող – բացեալ՝

ԳԱԲՐԻԷԼ ԼԱԶԵԱՆԻ

դառն կորուստին առթիւ։

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

**ՄԱՐՍԷՅԼ – ՍԷՆ ԺԵՐՈՄ.**— Հ. Յ. Դ. «Հայաստան» ենթակոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, նախապէս որոշուած հաւաքատեղին։ Կը հրաւիրուին նաեւ Դրօ խումբի ընկերները։ Խիստ կարեւոր օրակարգ։

## Հ. Յ. Դ. Ս. ՄԻՆԱՍԵԱՆ ԵՆԹԱԿՈՄԻՏԷԻ

33ՐԴ ՏԱՐԵԼԻՑԸ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ ՓԱՐԻԶԻ Հ. Յ. Դ. ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻ

ՇԱԲԱԹ 3 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1959ԻՆ, ԺԱՄԸ 21ԷՆ ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ

ԹԱՂԱՊԵՏԱԿԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

**22, Rue Voltaire, Alfortville**

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ **ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆԻ**

ԿԸ ԽՕՍԻ **Կ. ՄԵՀԵԱՆ**

ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻ **ՏԷՏԷՃԵԱՆ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲԸ** ԻՐ ՀԱՏԸՆՏԻՐ ՀԱՅԵՐԷՆ ԵՐԳԵՐՈՎ, ՊԱՆԵԷՕ–ՔԱՇԱՆԻ Հ.Յ.Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՊԱՐԱԽՈՒՄԲԸ, ղեկավարութեամբ ՎԻԳԷՆ ԹՈՐՈՍԵԱՆԻ, կովկասեան պարերով, ինչպէս նաեւ ՆԱՀԱՊԵՏԵԱՆ քոյրերը եւ Պ. ԱԻ. ՔԻՒՓԷԼԵԱՆ (երգ), ՕՐ. ԶԱՐՈՒՀԻ ՓԱՓԱԶԵԱՆ (արտասանութիւն)։

Կը ներկայացուի նաեւ ծիծաղաշարժ զաւեշտ մը, ղեկավարութեամբ՝

Յ. ՈՒՐԲԱԹԵԱՆԻ։

Հանդէսէն յետոյ խնջոյք — Մուտքը ազատ է

Հաղորդակցութեան միջոց.— Շարանթօն – էքօլէն առնել 103 թիւ օթօպիւսը եւ իջնել լ'Իւնիօն։

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

## ԵՒ

## ՔՐԻՍՏԱՓՈՐ ՄԻՔԱՅԷԼԵԱՆԻ ՀԱՐԻՒՐԱՄԵԱԿԸ

## ՎԻԷՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ
Հ. Յ. Դ. ՎԻԷՆԻ ԱՆԻ ԿՈՄԻՏԷԻ

Մասնակցութեամբ
Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ

*Կիրակի Հոկտեմբեր 18, կէսօրէ վերջ ժամը 3ին Սէրքըլ Կաթոլիկի սրահը :*

*Կը նախագահէ՝*
*ԸՆԿ. ՄԻՍԱՔ ՄԻՐՋԷ*

*Գեղարուեստական խնամուած բաժին :*

*Պիտի երգեն* Օր. Վ. Մուրատեան, *ըն-կերուհի* Վ. Բատիկեան, *ընկեր* Մ. Պասմաճեան :

*Նուագ.— Ծանօթ եւ սիրուած Նոր Սե-րընդական* Հ. Եօքսիւզեան :

*Արտասանութիւն.— Փոքրիկն* Ս. Բարսեղեան, Գ. Գղելեան, Օր. Կարապետ-եան, Յ. Մաթէոսեան, Հ. Ջաքարեան :

*Խօսք պիտի առնէ Նոր Սերունդի կողմէ Ընկեր Ա. ԼՈՒՍԱՐԵՒԵԱՆ*

Երգախառն կենդանի պատկեր

*Մուտքը ազատ է*

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ Տէսինի Ազգ. վարժա-րանի Կրթ. Մարմինը ժողովի կը հրաւիրէ բոլոր ծնողքներն ու դպրոցին դերը գնահատող Տէսինահայերը անխտիր, 15 Հոկտեմբեր, Հինգշաբթի երեկոյեան ժամը 8.30ին, Հ. Յ. Դ. Տան մէջ:* Շատ կարեւոր :

*ՇՈՒՏՈՎ ԼՈՅՍ ԿԸ ՏԵՍՆԷ*

## ՀԱՅ - ԲՈՅԺ

### *ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ*

խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

*Շուտով լոյս կը տեսնէ Մայիս – Յու-նիս թիւը, որ ուշացած էր կամքէ ան-կախ պատճառներով: Տպագրութեան յանձնուած է Յուլիս – Օգոստոս թիւը :*

Բովանդակութիւն *Մայիս – Յունիս թիւին* (209 – 210).—

*« Միզող տղան» Պրիւսէլի մէջ* (Հայ - Բոյժ).— *Երախաներուն սխորժակը* (Տոքթ. Պրոնշթայն).— *Ի՞նչ ընել լաւ քնանալու համար* (Տոքթ. Աշճեան). — *Արցունքին գործութիւնը* (Տոքթ. Գալուստեան).— *Հայաստանի վարդերը* (Շահինեան).— *Վաղուան մարդոց սը-նունդը* (Տոքթ. Պօղոսեան).— *Երբ սըր-տին մայր երակը կ'ընդլայնի* (Փրոֆ. Քամիյլ Լիան).— *Խլիրդը կը բուժուի ինքնին* (Տոքթ. Շ. Այվազեան).— *Արե-ւահարութիւն եւ ջերմահարութիւն* (Փրոֆ. Շարիմանեան).— *Արուեստա-կան սերնդագործութիւն* (Շ. Նարդունի). — *Սխտորին մասին* (Զիթունի).— *Ա-տամնաբուժին խրատները* (Ս. Ոսկեան). — *Ծխե՞լ թէ չծխել*(Տոքթ. Ազատանի).— *Բոյս մը որ հրաշք կը գործէ* (Քադիան). — *Արուեստական չնչառութիւն* (Խաչու-նի).— *Տաղ Թիւթիւնի.— Մրցում :*

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

### *ՊԱՅՈՒՄ*

13րդ *շրջանի Ա. դասախօսութիւնը այս Չորեքշաբթի գիշեր*, 14 *Հոկտեմբեր*, *ժամը* 21*ին*, *Քաղէի սրահը: Կը խօսի Մարսէյլէն՝ Պ. Սարգիս Պօղոսեան : Նիւթ.— «Արտասանական արուեստը» : Կը խնդրուի ըլլալ ճշդապահ :*

Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

ՀՈԿՏԵՄԲԵՐ 31ԻՆ

ժամը 21էն մինչեւ լոյս, տասներորդ թաղապետարանի սրահը :

### *ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ*

*Պիտի տօնուի Նոյեմբեր 7ին, Շաբաթ իրիկուն մինչեւ լոյս, Ալհամպրայի սը-րահը, Մարսէյլ :*

### *ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ*

*Հ. Յ. Դաշնակցութեան օրը պիտի տօնուի Հոկտեմբեր 17ին, Շաբաթ երե-կոյեան, պետական Թատրոնի սրահը :*

### *ԼԻՈՆԻ ՄԷՋ*

Հոկտեմբեր 24ի Շաբաթ իրիկունը
Սալ Քրուէքիի մէջ
*Մանրամասնութիւնները շուտով :*



## ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ԿԻՐԱԿԻ, ՀՈԿՏԵՄԲԵՐ 25ԻՆ

ԺԱՄԸ 16ԷՆ ԿԷՍ ԳԻՇԵՐ

**George V** 31, AVENUE GEORGE V, PARIS
Եղանակին առաջին պարահանդէսը
Զանազան անակնկալներ

ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ JEAN CANTEL
ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ ՕՐ. CHRISTIANE JANԻ

**Deux Orchestres** **Attractions** **Tombola**

*Կը խնդրուի կանխաւ ապահովել սեղանները հեռաձայնելով Միութեան գրասենեակը :* PRO. 77-73 ՄՈՒՏՔ 500 ՖՐԱՆՔ

ՄՈՒՐԱՏ ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ
ՄԱՐՍԷՅԼ

ԵՂԱՆԱԿԻ ԱՌԱՋԻՆ

## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Շաբաթ, Հոկտեմբեր 24, ժամը 22էն մինչեւ առաւօտ

## Le Club

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՓՍԱԿԻ

Այրի Տիկին Արաքսի Աշճեան, Տէր եւ Տիկին Բարսեղ Գիլճեան, Տէր եւ Տիկին Վաղարշակ Վարպետեան 15.000 ֆրանք կը նուիրեն Մշակոյթի Տան Շաւարշ Միսաքեան սրահին, փոխան ծաղկեպսակի իրենց եղբօր եւ մօրեղբօր ողբացեալ

ԱՐՏԱՇԷՍ ՊԻՊԼԸՐԵԱՆի

մահուան առթիւ :

× Նոյն առիթով եւ նոյն նպատակին կը նուիրեն Տէր եւ Տիկին Շաւարշ Սողոմոնեան երկու հազար ֆրանք եւ Սարեան ընտանիքը հազար ֆրանք :

Ստանալ «Յառաջ»էն :

## ՆՈՒԷՐՆԵՐ

Ողբացեալ Գէորգ Բարմաքի մահուան քառասունքին առթիւ Տէր եւ Տիկին Տիրան եւ Սիրվարդ Զօլաքեան երեք հազար ֆրանք կը նուիրեն Որբախնամ Տիկնանց Միութեան : Ստանալ «Յառաջ»էն :

×

Այրի Տիկին Փերուզ Եաքճրճեանի յուղարկաւորութեան առթիւ, Իյնէճեան ընտանիքը հազար ֆր. կը նուիրէ «Յառաջ»ին :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապ. Խաչի Սէն Լուի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է երկու հազար ֆրանք Տիկին Ս. Եօթնեղբայրեանէ եւ Պ. Յարութիւն Յովակիմեանէ հազար ֆրանք :

ՈՐԲԵՐՈՒ Օգն. Մարմինը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Գ. Աղլաղանեանէ երկու հազար ֆրանք, ի յիշատակ Տիկին Թագուհի Ունճեանի :

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Կ'ՈՒԶՈՒԻ

Ճաշարանը սպասարկելու համար այր մարդ մը :

Դիմել վարժարան՝

26, RUE TROYON, SEVRES
METRO : PONT DE SEVRES

## ԾԱԽՈՒ ՏՈՒՆ

Մեկնումի պատճառով ծախու է քաղաքէն գեղեցիկ տուն մը, պարտէզով Մեռի տ'Իսիի մեթրոյին մօտ :

Գետնայարկի վրայ, տունը ունի մուտք, հիւրանոց, ճաշարան, խոհանոց եւ արտաքնոց : Առաջին յարկը՝ երկու ընդարձակ սենեակ եւ երկու փոքր : Շինուած է ամբողջովին մառանի մը վրայ ուր կայ լուսաւոր աշխատանոց մը եւ լուացարան : Ուզողին կը ձգուի նաեւ հասութաբեր օգակ շինելու գործ մը արդիական մեքենաներով :

Ժամադրութեան համար հեռաձայնել՝

MIC. 53-23

Հասցէ Դաւիթեան՝

26, RUE E. ZOLA, ISSY

## ԾԱԽՈՒ ՏՈՒՆ

Ծախու է չորս սենեակ, խոհանոցով տուն մը : Դիմել՝

M ERGANIAN
II, BLD. RODIN, ISSY-LES-MOULINEAUX

Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

ԵՒ

## ՔՐԻՍՏԱՓՈՐ ՄԻՔԱՅԷԼԵԱՆԻ ՀԱՐԻՒՐԱՄԵԱԿԸ

## ԼԻՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Լիոնի «Վարանդեան» կոմիտէի եւ մասնակցութեամբ Նոր Սերունդի «Սխամանթօ» խումբին :

Հոկտեմբեր 24, Շաբաթ իրիկուն, ժամը 8.30ին, Սալ Քրուէֆիի մէջ, 24 Րիւ Տիւնուառ :

Կը նախագահէ ընկեր ՆՇԱՆ ՊԵՏՐՈՍԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին, որուն մասնակցութիւն կը բերեն Նոր Սերունդի երգչախումբը ղեկավարութեամբ Պ. Աբրահամեանի :

Կ'արտասանեն .— Տիկ. Գայթանճեան, Օր. Տապաղեան եւ ընկեր Վ. Սարգիսեան :

Կը նուագեն (ջութակ) Պ. Աբրահամեան, ընկեր Պէրպէրեան եւ Սօնա Տէր Պետրոսեան (դաշնակ) :

Կ'երգեն Օր.ներ Անժէլ Կարապետեան, Ատրինէ Պապայեան :

Եւ Փարիզէն յատկապէս հրաւիրուած, սիրուած երգիչ Պ. Մկրտիչ Պօղոսեան, դաշնակի ընկերակցութեամբ ծանօթ խմբավար Պ. Ափրիկեանի :

Հայկական պարեր Տէսինի Նոր Սերունդին կողմէ :

Մուտքը ազատ է :

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

Հ. Յ. Դ. ԱՐԵՒՄՏԵԱՆ Եւրոպայի Կ. Կոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ՝

ԿՐԸՆՈՊԼԻ Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեան ենթակոմիտէն, Շաբաթ, 24 Հոկտեմբեր, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին : Ներկայ կ'ըլլան Կ. կոմիտէի ներկայացուցիչները :

ՎԻԷՆԻ Անի կոմիտէն Կիրակի (25 Հոկտեմբեր), ժամը 20.30ին, սովորական հաւաքատեղին :

ԼԻՈՆԻ Վարանդեան կոմիտէն Երկուշաբթի (26 Հոկտեմբեր) իրիկուն ժամը 20.30ին :

ՎԱԼԱՆՍԻ Քրիստափոր կոմիտէն Եռեքշաբթի (27 Հոկտեմբեր) իրիկուն ժամը 20.30ին :

Այս ժողովներուն ներկայ կ'ըլլայ Կ. Կոմիտէի ներկայացուցիչը :

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

Ֆասոնիէններ ժոժ 4 կամ 5, շատ մեծ սեռի : Ներկայանալ ամէն օր ժամը 8–12 :

ETS. GANA
64, Rue Turbigo, PARIS

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

Հայաստանի Ղափանի շրջանի Ագարակ գիւղացի Լեւոն Ղազարի Պօղոսեան եւ Մոլէվ գիւղացի երկու եղբայրներ՝ Աշոտ եւ Մամիկոն Սարգիսի Յարութիւնեան, որոնք կորսուած են Բ. Աշխարհամարտի ընթացքին : Լուր ունեցողներէն կը խնդրուի յայտնել հետեւեալ հասցէին .—

M. V. AGHAYAN
28, Bd. Roume, les Martegaux, Marseille (13e) B. du R.

Ամերիկահայ թերթերէն կը խնդրուի արտատպել :

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

ՀՈԿՏԵՄԲԵՐ 31ԻՆ

Ժամը 21էն մինչեւ լոյս, տասներորդ թաղապետարանի սրահը :

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Պիտի տօնուի Նոյեմբեր 7ին, Շաբաթ իրիկուն մինչեւ լոյս, Ալհամպրայի սրահը, Մարսէյլ :

### ՊՈՐՏՈՅԻ ՄԷՋ

Հոկտեմբեր 25ին :

### ՍԷՆ ՇԱՄՈՆԻ ՄԷՋ

Նոյեմբեր 7ին :

### ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Հոկտեմբեր 17ին :

Կը խօսի ընկեր Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

### ՓՈՆ ՏԸ ՇԷՐԻՒԻ ՄԷՋ

Այս Կիրակի ժամը 15ին :

Կը նախագահէ ընկ. Յ. ԱՀԱՐՈՆԵԱՆ

Կը խօսի ընկեր Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

Ընկեր Մ. Պապիկեանի սրահը, Քաթ Պիսօն Փըթի Շալէ :

### ՍԷՆԹ ԷԹԻԷՆԻ ՄԷՋ

Նոյեմբեր 8ին :

### ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Հոկտեմբեր 25ին :

## ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ԿԻՐԱԿԻ, ՀՈԿՏԵՄԲԵՐ 25ԻՆ

ԺԱՄԸ 16էն ԿԷՍ ԳԻՇԵՐ

**George V** 31, AVENUE GEORGE V, PARIS

Եղանակին առաջին պարահանդէսը

Զանազան անակնկալներ

ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ JEAN CANTEL

ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ ՕՐ. CHRISTIANE JANի

**Deux Orchestres** **Attractions** **Tombola**

Կը խնդրուի կանխաւ ապահովել սեղաններ հեռաձայնելով Միութեան գրասենեակը : PRO. 77-73

ՄՈՒՏՔ 500 ՖՐԱՆՔ

ՄՈՒՐԱՏ ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

ՄԱՐՍԷՅԼ

ԵՂԱՆԱԿԻ ԱՌԱՋԻՆ

## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Շաբաթ, Հոկտեմբեր 24, ժամը 22էն մինչեւ առաւօտ

**Le Club**

Եթէ կ'ուզէք ըլլալ աշխոյժ,
Եւ ունենալ կորով եւ ուժ,
Ճաշակեցէք հիւթ - լոլոլ
Բայց փնտռեցէք միայն՝

BONGOUTն

**Société des Conserves**

**BONGOUT**

**40, la Canebière — Marseille**

## ԾՐԱՐՆԵՐ ԴԷՊԻ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹԻՒՆ

ԱՐԱԳ ԵՒ ԼԱՒ ՍՊԱՍԱՐԿՈՒԹԻՒՆ

ԱՇՈՒՆԸ կուգայ : ՅԻՇԵՑԷ՛Ք ձեր մերձաւոր ազգականները եւ առանց ուշանալու ծրարներ ՂՐԿԵՑԷ՛Ք անոնց :

Ձեր առաքումներուն համար ունինք առաջնակարգ ապրանքներ, ամէնէն նպաստաւոր գիներով .— Զուտ բուրդէ կերպասներ, հիւսուածեղէն, ճերմակեղէն, կօշիկ, ղուլպայ, ժամացոյց, եւայլն :

ԱՆԳԼԻԱԿԱՆ կերպասներու եւ ԱՆԳԼԻԱԿԱՆ ՇԻՆՈՅԹ զգեստեղէնի ճոխ ընտրութիւն ... զործատունի գինով արտածում :

Մաքսի, ապահովագրութեան, ծրարումի, արտածումի արտօնութեան եւ ամէն ուրիշ ծախքապրանքներուն ծախու գիներուն մէջ են :

Եթէ ձեր գնումները մեր խանութներուն մէջ կատարէք, առաքումներուն համար աւելի նպաստաւոր գիներ կը վերապահենք, 2.500 ֆրանք՝ 20 քիլօնոց ծրարին համար :

ՈՒՐԻՇ ՏԵՂ ԳՆՈՒՄ ԿԱՏԱՐԵԼԷ ԱՌԱՋ, ՄԵԶԻ ԱՅՑԵԼԵՑԷ՛Ք :

**SICOMEX**

Téléphone : OPE. 67-77

20, Rue Royale, 20
PARIS 8e

Métro : Madeleine et Concorde

ՏՊԱԳՐԱԿԱՆ ԱՄԷՆ ՏԵՍԱԿ ԳՈՐԾԻ ՀԱՄԱՐ

## ՅԱՌԱՋ

PARIS - IXe
32, RUE DE TRÉVISE
TÉL. : PRO. 86-60

✶

ԽՆԱՄՈՒԱԾ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ԱՐԱԳ ՅԱՆՁՆՈՒՄ

ՆՊԱՍՏԱՒՈՐ ԳԻՆԵՐ

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Փարիզի Աղքատախնամի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուէրները .— Տիկին Սալմասլեան, իր մօրը՝ Ովսաննա Բօլատի յիշատակին, երկու ծերանոցներուն երեք հազար ֆր., Պ. Մանկեան հազար, Տիկին Ջըրբաշեան, ողբ. Հրաչ Սարգիսեանի մահուան 5րդ տարելիցին առթիւ երեք հազար, Տէր եւ Տիկին Կրօնիք Փափազեան, փոխան ծաղկեպսակի Այրի Տիկին Դանիէլեանի մահուան առթիւ երեք հազար, Պ. Գուրտագճեան (Կրան Օթէլ, Փարիզ) տասը հազար, Պ. Արրօ Խանճեան Անտիյլի ծերանոցին՝ հինգ հազար :

×

Առնուվիլի Անարատ Յղութեան Քոյրերու դպրոցին վարչութիւնը շնորհակալութիւն կը յայտնէ «Գալուստ Կիւլպէնկեան Հիմնարկութեան» որ 1959 – 1960 տարեշրջանի երկու սանուհիներու համար 300.000 ֆր. նուիրած է :

## ՀՐԱՒԷՐ ԾՆՈՂԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ

ԱԼՖՈՐՎԻԼ .— Հայ ազգը, դարերու ընթացքին, իր աշխարհագրական անըմպաստ դիրքին ու շրջապատուած առաւել կամ նուազ վաչկատուն ցեղերու չարունակական հուրի, սուրի ու թալանի խուժդուժ յարձակումներուն հակառակ, պահած է իր գոյութիւնը ու պիտի պահէ, շնորհիւ մէկ միւսին հետ շաղախուած, երկու ազդակներու, լեզուի եւ կրօնքի :

Քանի քանի տկար կամ հզօր ազգեր ի սպառ անհետացած են այդ ազդակներուն հանդէպ իրենց դատապարտելի ու կործանարար անտարբերութեան պատճառաւ : Ասպնջական մեծ պետութեանց երկիրներուն մէջ ապրող չորս հովերէն տարուբեր՝ Հայերուս համար մանաւանդ ազգապահպանման հարցը, տարուէ տարի աւելի զգալի կը դառնայ :

Ականատես ըլլալ ամենամեծ վտանգի մը ու ձեռնածալ նստիլ՝ ոճիր մըն է, որ Հայերուս իբերօղնութեան վսեմ նկարագրին հետ խոտոր կը համեմատի :

Արդ, բոլոր խաւերէ տեսնեւհինգ անդամներով կազմուած ներկայ Կրթ. Հոգաբարձութիւնս, համերաշխ ու գիտակ՝ իր ստանձնած պարտականութեան եւ պատասխանատուութեան, ստուար թիւով աշակերտներու օգտակար ըլլալու նախաձախնդրութեամբ, իր կարելի բոլոր միջոցները ի գործ պիտի դնէ, սոյն կենսական հարցը բարւօք ի կատար հանելու համար :

Գաղութիս անխտիր բոլոր Հայերը վստահ ենք թէ պիտի չզլանան բարոյական լայն աջակցութեամբ զօրավիգ հանդիսանալ մեզի, յօգուտ ազգային մատաղ մանկտույն :

Կրթական Հոգաբարձութիւնս կը յուսայ, որ ստուար թիւով ներկայ պիտի գտնուիք, յառաջիկայ ծնողական ժողովին, որ տեղի պիտի ունենայ Ուրբաթ, 30 Հոկտեմբեր 1959, ժամը 20.30ին, տեղւոյս Ս. Պօղոս Պետրոս եկեղեցին, ուր նկատի պիտի առնուին մանաւանդ ձեր դիտողութիւններն ու օգտակար առաջարկները :

ԿՐԹ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

Հ. Յ. Դ. ԱՐԵՒՄՏԵԱՆ Եւրոպայի Կ. Կոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ՝

ԼԻՈՆԻ Վարանդեան կոմիտէն Երկուշաբթի (26 Հոկտեմբեր) իրիկուն ժամը 20.30ին :

ՎԱԼԱՆՍԻ Քրիստափոր կոմիտէն Երեքշաբթի (27 Հոկտեմբեր) իրիկուն ժամը 20.30ին :

Այս ժողովներուն ներկայ կ'ըլլայ Կ. Կոմիտէի ներկայացուցիչը :

### ՀԱՅ ՆԱԽԿԻՆ ՌԱԶՄԻԿՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ

Շաբաթ, Հոկտեմբեր 31ին, Ֆրանսական Բանակի Նախկին Ռազմիկներու Կամաւորներու Մայր Ընկերակցութիւնը պիտի արծարծէ Անծանօթ Զինուորին Բոցը :

Արարողութիւնը որ կ'ողեկոչէ Լեգէոնին Դրօշին տրուած Զինուորական Մետալին քառամեակը պիտի վայելէ Նախարար Թրիպուլէի եւ Զօր. Ջեյլէրի նախագահութիւնը :

Հաւաքուիլ մեթրօ Ժորժ Ե., ժամը 17.30ին :

Արարողութենէն ետք պատույ գինեձօն մը պիտի տրուի բոլոր ներկայ անդամներուն :

Նոյն իրիկունը բարեկամական ճաշ մը տեղի պիտի ունենայ Սէրքըլ Ռէփիւպլիքէն, 5 Ավընիւ տը լ'Օփերա : Գին՝ 2000 ֆրանք, արձանագրուիլ Միութեան կեդրոնը՝ ՓՐՕ. 54–86, ժամը 14էն սկսեալ :

### ՀՐԱՒԻՐԱԳԻՐ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ

Հ. Բ. Ը. Մ. Կեդր. վարչ. ժողովը պատիւ ունի հրաւիրելու Միութեան բոլոր իրաւասու անդամները, որպէսզի ներկայ գտնուին մեր Ընկերակցութեան 46րդ ընդհ. ժողովին, որ պիտի գումարուի Շաբաթ օր, 21 Նոյեմբեր 1959, առաւօտեան ժամը 9.30ին, Միութեան Կեդր. դրասենեակին մէջ, 250 Ֆիֆթի Էվընիւ, Նիւ Եորք, Ն.Ե. :

Եթէ օրինական մեծամասնութիւն մը ներկայ չըլլայ վերոյիշեալ թուականին, այս ծանուցումը պիտի նկատուի իբրեւ երկրորդ հրաւէր ընդհ. ժողովի, որ պիտի կատարուի Շաբաթ եւ Կիրակի, 5 եւ 6 Դեկտեմբեր 1959, առաւօտեան ժամը 9.30ին, Օթէլ Ռուզվէլթի մէջ, Մէտիսըն Էվընիւ եւ 45րդ փողոց, Նիւ Եորք, Ն. Ե. :

Բոլոր իրաւասու անդամները որ ներկայ պիտի ըլլան այս ժողովին, օրինական մեծամասնութիւն պիտի կազմեն :

ՕՐԱԿԱՐԳ.— 1. Ընդհ. տեղեկագիր 1958 տարեշրջանի :

2. Ընդհ. հաշուետուութիւն 1958 տարեշրջանի :

3. Ընտրութիւն Կեդր. Վարչ. ժողովի՝ իրենց պաշտօնավարութեան շրջանը աւարտած անդամներու տեղ :

4. Առաջարկներ եւ թելադրութիւններ :

5. Ուղերձներ :

Ի դիմաց Կեդր. Վարչ. ժողովի ատենապետ Ա. Մանուկեան, ատենադպիր՝ Մ. Մ. Յովսէփեան :

### ՍՊԱՆԱԿԱՆ ՄՇԱԿՈՅԹԸ ԵՒ ՀԱՅԵՐԸ

Եգիպտոսէն Տիկին Մալվինա Հազարեան, որ մաս կը կազմէ Գահիրէի սպանական մշակութային Միութեան, մասնաւոր հրաւէրով Մատրիտ գացած է իր ուժ սպանացի, ֆրանսացի եւ յոյն ընկերուհիներով, Սանթըր Քիւլթիւրէլի դահլիճին մէջ կարգ մը դասախօսութիւններ տալու համար: Տիկին Հազարեան մօտ մէկ ժամ խօսած է սպաներէն լեզուով:

Նոյն նիւթը ունեցած է նաեւ Պարսելոնայի մէջ լեցուն սրահի մը մէջ: Միանգամայն քաջ դաշնակահարուհի, Տիկին Մ. Հազարեան համեմած է իր դասախօսութիւնները նուագելով սպանական տոհմիկ կտորներ, կրանատայէն հատուածներ:

### ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՏՈՒՆ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Անիէնի Սեբոբ-Սօսէ խումբը չորս հազար ֆրանք կը նուիրէ Մշակոյթի Տան ընկեր Արտաշէս Պիպէրեանի մահուան առթիւ: Նոյն առթիւ խումբը իր ցաւակցութիւնները կը յայտնէ ընկեր Արայ Պիպէրեանի:

(Ստանալ «Յառաջ»էն):

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները:

Տէր եւ Տիկին Գէորգ Մարանկօզեանէ յիսուն հազար ֆրանք նուիրատուս, եւ տասը հազար ֆրանք Տիկին Մուրատի մահուան տարելիցին առիթով: Տէր եւ Տիկին Եդուարդ Սարաֆեան տասը հազար: Պ. Աւագեան (Լիոն) հինգ հազար ֆրանք իր մօրը մահուան տարելիցին առիթով: Տէր եւ Տիկին Տիգրան Քէօշկէրեան երկու հազար ֆրանք Տիկին Մուրատի մահուան տարելիցին առիթով: Տիկ. Աննա Սարաճեան երկու հազար ֆրանք Տիկին Ռոզ Պատմագրկանի մահուան առիթով: Տիկին Լուսի Սալմաստեան երկու հազար ֆրանք իր մօրը մահուան տարելիցին առիթով: Տիկին Եղիսաբէթ Թաթինեան երկու հազար ֆրանք: Պ. Տիգրան Հաճեան հազար ֆրանք:

### ԱՄԱՍԻԱՑԻՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

Ամասիոյ պատմագրքին համար Փարիզ կազմուած յանձնախումբը կը խնդրէ բոլոր Ամասիացիներէն որոնք նկարներ, գրութիւններ կամ ձեռագրեր ունին, նոյն իսկ դպրոցական հանդէսներ, փութան ղրկել հետեւեալ հասցէներուն, վերադարձնելու յանձնառութեամբ:

**DEUKMEDJIAN**
87, Rue Rébeval, Paris 19e

**HADJIDJANIAN**
3, Rue Thimonnier, Paris 3e

**NIGOGHOSSIAN**
2 bis, Rue St. Just, Arnouville les Gonesse (S. et O.)

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ
ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ
ՅՈՒՆՈՒԱՐ 23ԻՆ
ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ՕՐԸ
ՄԱՅԻՍ 8ԻՆ

Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

Հ. Յ. Դ. ԱՐԵՒՄՏԵԱՆ Եւրոպայի Կ. Կոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ՝

ՎԱԼԱՆՍԻ Քրիստափոր կոմիտէն Երեքշաբթի (27 Հոկտեմբեր) իրիկուն ժամը 20.30ին:

Այս ժողովներուն ներկայ կ՚ըլլայ Կ. Կոմիտէի ներկայացուցիչը:

### ՀԱՅ ՆԱԽԿԻՆ ՌԱԶՄԻԿՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ

Շաբաթ, Հոկտեմբեր 31ին, Ֆրանսական Բանակի Նախկին Ռազմիկներու Կամաւորներու Մայր Ընկերակցութիւնը պիտի արծարծէ Անծանօթ Զինուորին Բոցը:

Արարողութիւնը որ կ՚ողեկոչէ Լեգէոնին Դրօշին տրուած Զինուորական Մետալին քառամեակը պիտի վայելէ նախարար Թոխպուլէի եւ Զօր. Զեյլէրի նախագահութիւնը:

Երկու պատերազմներու հայ նախկին ռազմիկները պաշտօնապէս հրաւիրուած են, մեծ թիւով մասնակցելու:

Հաւաքուիլ մեթրօ Ժորժ Ե., ժամը 17.30ին:

Արարողութենէն ետք պատուոյ գինեձօն մը պիտի տրուի բոլոր ներկայ անդամներուն:

Նոյն իրիկունը բարեկամական ճաշ մը տեղի պիտի ունենայ Սէրքըլ Ռէփիւպլիքէն, 5 Ավընիւ տը լ՚Օփերա: Գին՝ 2000 ֆրանք, արձանագրուիլ Միութեան կեդրոնը՝ ՓՐՕ. 54-86, ժամը 14էն սկսեալ: 32 Րիւ տը Թրէվիզ:

### ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական հաւաքոյթը այս Չորեքշաբթի գիշեր, ժամը 21ին, Քատէի սրահը, նուիրուած՝ ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆԻ յիշատակին: (իր մահուան քասնամեակին առթիւ): Պիտի խօսին՝ Պ. Լեւոն Տօնիկեան, Արտ. Գմբէթեան եւ Հ. Բալուեան: Պիտի տրուին մեծ երգիչին երաժշտական կտորները:

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ Ֆէսանվիլիյէի օգափոխութեան կայանին կը նուիրեն.—

Աճէմեան եղբայրներ երկու հազար ֆր: Պ. Ս. Սէմէրճեան (Ալֆորվիլ) հազար, Տիկին Հաճի Կիւլիւմիս (Ալֆորվիլ) 500 ֆրանք, Տէր եւ Տիկին Ադամալեան, Պ. Կարապետեան 500ական:

Հայ Կարմիր Խաչի Փարիզի դարմանատան կը նուիրեն.—

Պ. Եղեկիէլեան, Պ. Տէր Արսէնեան հազարական, Պ. Պ. Տէյիրմէնճեան, Ծիպէլեան, Համբարձումեան, Թապիպեան 500ական ֆրանք:

Հրանդ Պալեան (Վէրսայլ) կը նուիրէ հազար ֆրանք Հայ Կարմիր Խաչի Անտէր հիւանդներու ֆոնտին, Պ. Ետլընըրեանի ամուսնութեան առթիւ:

Տէր եւ Տիկին Սանոյեան երեք հազար ֆրանք, Բամպուքճեան եղբայրներ երկու հազար, Պ. Պ. Տէվէճեան, Գըլըճեան, Խաչիկեան, Զաքարեան, Կարսլեան, Խօրասանճեան եւ Տէր եւ Տիկին Հօտաղեան հազարական ֆրանք:

Պ. Յովակիմեան, Տէր եւ Տիկին Սալէրեան: Պ. Թորոսեան, Պ. Սարաֆեան, Պ. Այանեան, Պ. Մէրտանեան, Պ. Թօքաթլեան եւ Գարէն Հաստատութիւն 500ական ֆրանք:





### ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Փոխան ծաղկեպսակի եւ այլ առիթներով Մշակոյթի Տան ըլլալիք նուիրատուութիւնները ղրկել Չէք Փոստալի հետեւեալ հասցէով՝

Maison de la Culture Arménienne
Chèque Postal : 5.460-11

կամ գանձապահին՝

**H. SAMUELIAN**
51, Rue Mr.-le-Prince, Paris 6e

եւ կամ քարտուղարին՝

**B. THIBOUKDJIAN**
7, Rue Grange Batelière, Paris 9e

### ՀԱՅԱԾԽՍ ՊԱՏԱՐԱԳ ՊԱՆԵԼՈՅԻ ՄԷՋ

Այս Կիրակի Ամենայն Սրբոց տօնին առթիւ՝ ժամը երեկոյեան 7ին:

Գեր. Կոմիտաս Վ. Զարդճեան, Պոլսոյ կղերէն պիտի պատարագէ եւ քարոզէ Սէն Րընէ մատրան մէջ:

(83 Ռիւ տ՚Արքէօյ):



### Դ Ա Ս Ե Ր

Հայերէնի, Թուաբանութեան եւ գիտութեան դասեր կուտայ երիտասարդ ուսանող մը:

Դիմել՝ Յակոբ Գավաֆեանի՝
57 Պուլվ. Ժուռտան, Փարիզ (14):

